ասէ. վարդապետ բարերար՝ մատուցի զորդի իմ առ աշակերտսն քո, և ոչ կարացին բժշկել. և փրկիչն ասէ, քանի՞ ժամանակք են. ոչ զի ինքն ուսանիցի, այլ զի որ մօտն կային՝ ուսանիցին, թէ զքանի՞ ժամանակաց ախտ 'ի բաց պարզէ, և օգտեսցին: 'Ի մանկութե՞ է ասէ. բազում անգամ 'ի հուր արկանէ զդա, և 'ի ջուր. և ասացի ցաշակերտսն քո, և ոչ կարացին բժշկել. այլ թէ հնար ինչ է, օգնեա մեզ: Մ՛իտ դիր հաստատութե̃, զմատչելն ընկալաւ, բայց զերկմիտ մտօք մատչելն խոստեաց: Յա̃ծ ոք ասիցէ, թէ հնար ինչ է, չյարգե այն յա̃ծ. այլ միւսն, թէ յամենայնի հնար գոյ ա̃յ: Իսկ քանզի մատեաւ առ նա իբրև առ մարգարէ, կամ իբրև առաքեալ, որ մասնաւոր ինչ զօրութի ունիցի, և իցէ ինչ՝ զոր կարիցէ առնել, և իցէ ինչ՝ զոր ոչ կարիցէ առնել, ապա և փրկիչն ծառը առնէ զանխրատութի նորա, մանաւանդ թէ խրատէ իսկ զտխմար միտս նորա, զի ասաց՝ թէ կարող ես. և լուռե̃ն տանջէ զստահակութին: Ամենայնի ասէ հնար գոյ այնմ որ հաւատայ: Ո՛անս՝ ինչ յայտ չառնէ, բայց որ մօտն կայր՝ իմացաւ յերեսացն զցասումնն. իբրև ետես՝ եթէ մեղադիր լինի կենարարն, և երեսօքն յայտ առնէ զցասումն, զի՞նչ բողոք հարեալ աղաղակեաց՝ որ յանցեաւն. Հաւատամ ասէ, տէր, օգնեա անհաւատութեանս իմոյ. փոխանակ ասելոյն, թէ յանցեայ, չէի հմուտ զօրութեդ. լցո զթերութիս. օգնեա անհաւատութեանս. քանզի անհաւատութե̃ էր՝ ասելն, թէ կարող ես՝ օգնեա: Այլ հայր դիւահարին զղջացաւ, և հերձուածողք մոլորեալք ոչ զղջանան, որք բազում անգամ յազօթս կոչեն զորդի:

Ո՞հ անմտութեան: Դ՛րեսջի՞ր թէ հանդիտապատիւ ա̃յ չիմանայցես զորդի, և ոչ զհոգի՝ որդւոյ, մարգարէիցն հանդիտապատիւ չառնիցես. չիցէ՞ լուեալ զբանն եղիայի մարգարէի, եթէ այր ա̃յ իցեմ ասէ, իջցէ հուր, և կերիցէ զյիսնապետդ և զյիսունսդ: Մարգարէն ձօնութի հրամայէ, և տէր մարգարէիցն աղօ՞թս առնիցէ. եղիա իշխանութի հրամայէ արարածոց՝ որոց չէր տէր, այլ վասն զի

niens, inquit, vir quidam, duxit ad eum filium suum a daemonio agitatum, et dixit: Magister benefice, adhibui filium meum ad discipulos tuos, et non potuerunt sanare. Redemptor autem dicit: quot tempora sunt? non ut ipse disceret, sed ut qui adstabant discerent, quam longi nempe temporis morbum repelleret, et lucrifacerent. A juventute, inquit; saepe in ignem mittit istum, et in aquam: et dixi discipulis tuis, et non potuerunt sanare; sed si fieri potest, adjuva nos. Attende diligenter. Accessum suscepit, sed dubiam in accessu mentem rejecit. Ad Deum dicere, *si fieri potest*, non convenit Deo, sed illud dicendum erat, *omnia fieri possunt apud Deum*. Quoniam autem accessit tamquam ad prophetam vel apostolum, qui partialem haberet facultatem, ita ut quaedam posset facere, et quaedam non posset facere, ideo et Redemptor deridet insipientiam ejus, vel potius instruit ignorantiam ejus. Dixit enim, *si potes*. Silentio autem castigans insolentiam, *Omnia*, inquit, *fieri possunt ei, qui credit*. Quibus verbis nihil certi patefecit, sed vir ille adsistens intellexit ex vultu indignationem. Itaque videns Salvatorem se increpantem, vultuque iram monstrantem, quid putas, voce emissa clamavit, qui deliquit? *Credo*, inquit, *Domine*, *Adjuva infidelitatem meam;* volens dicere: Peccavi, nesciebam virtutem tuam, imple defectum meum, adjuva incredulitatem meam. Incredulitatis enim erat dicere, *si potes, auxiliare*. Verum patrem daemoniaci poenituit: sed haereticos errantes vix poenitet, qui saepe saepius in orationem vocant Filium. ( vel invocant, ut oret pro se ipsis. )

O amentiam! Quum juxta sententiam tuam aequalem Deo in honore non intelligas Filium, nec Spiritum Filio, prophetis saltem aequalem in honore nolisne facere? Non audisti dictum Eliae Prophetae, *Si vir Dei sim*, ait, *descendat ignis, et devorabit te quinquaginta virorum Ducem una cum tuis hominibus*. Propheta cum auctoritate jubet, et Dominus prophetarum orabit? Elias authentice jussum dat creaturis,

համարձակութի̃ ա̃ծպաշտութե̃ ունէր. և անդ էր տեսանել մարդ մնեղէն, զի փայլատականց հրոյ հրաման տայր, և հուր 'ի վերայ հակառակորդացն իջուցանէր: Այս այլ ուր նոյն երանելին եղիա ասէ ցաշակերտն, խնդրեա՛ ինչ յինէն՝ մինչև համբարձեալ իցեմ 'ի քէն, և արարից քեզ. և չասաց, թէ բարեխօսեցից, այլ թէ արարից, մինչև վերացեալ իցեմ: Մարգարէքն շնորհութ̃ հրամայեն ըստ հաւատոցն զօրութե̃, և զտէր մարգարէիցն 'ի հնազանդութի՛ւն կոչես, և զքեզ հաղորդ աղօթիցն համարիս: Այլ ո՞չ յեսու անուանակից ա̃ծ պատկառեցուցանէ զքեզ, որ առանց աղօթից կացոյց զարեգակն. մի թէ աստ՞ց ցտէր, կացո՛ զարեգակն. այլ շնորհութ̃, թէ կացցէ՛ արեգակն: Ծառայն այնչափ կարող եղև, մանաւանդ թէ անուն իսկ տէրունական. ո՛չ եթէ 'ի նմանէ ինչ ակնածեաց, այլ յարքունական անուանէն. և բուն իսկ ճշմարտութիւնն չգործիցէ՞ բարերարութի շնորհութ̃, այլ բարեխօ՞ս լինիցի: Բայց որ ինչ առաջի կայ՝ յայն երթիցուք:

Անուն հօր՝ էն է, և անուն որդւոյ՝ էն. անուն հօր՝ օգնական է, և անուն որդւոյ՝ օգնական. անուն հօր ամենակալ է, և անուն որդւոյ՝ ամենակալ: Եթէ վճիռ ինչ տալով ասեմ, մի՛ ընդունիր. և եթէ յայտ առնելով, մի՛ ստուգանէր: Տես զինչ կրեսցես, եթէ զոր ես ասեմ ստուգանիցես. զմարգարէսն թշնամանես, յա̃յ ուրանաս. եթէ զմարգարէսն թշնամանես, և ես յառաջ մատուցեալ՝ յամ բարշտութի անկանիցիս. եթէ իմ ինչ զբանս համարեսցիս՝ զոր մարգարէքն խօսեցան, ո՛չ զիս՝ որ մեկնեմս՝ թշնամանես, այլ զմարգարէիցն բարբառս, և զա̃յ ազդեցութիւն: Ոգիտիցես, եթէ իւր համարի ա̃ծ զմարգարէիցն թշնամանս. յորժամ արհամարհեցաւ սամուէլ 'ի ժողովրդենէն, զինչ ասաց ա̃ծ. ո՛չ զքեզ արհամարհեցին ասէ, այլ զիս: Այս զի յայտ արասցէ, թէ որ վարդապետի և մարգարէի ո՛չ լսէ, ա̃յ չլսէ, ասէ ցեզեկիէլ. որդի մարդոյ, երթ առ տունն դառնացողացն, և խօսեսցիս ընդ նոսա, և չլսիցեն քեզ, քանզի ո՛չ կամին լսել ինձ. եթէ քեզ լսեն, ապա և ինձ լսեն. և եթէ ինձ, և քեզ:

quarum non erat dominus, sed quia confidentiam pietatis habebat. Erat autem ibi videre hominem carnalem fulminibus ignis imperantem, et ignem super adversarios deducentem. Atque alibi idem beatus Elias dicit ad discipulum: *Pete aliquid a me, antequam elevatus sim a te, et faciam tibi*. Nec dixit, ut intercedam, sed faciam, antequam ascendam. Prophetae in auctoritate jussum dant secundum vim fidei, tu autem Dominum prophetarum in obedientiam vocas, et participem te orationis ejus putas? Neque Josue ejusdem nominis cum Domino pudore te afficit, qui sine precibus detinuit solem? Num dixit ad Dominum, cohibe solem? sed authentice (jussum dedit), stet sol. Servus adeo potuit, imo nomen ipsum Dominicum; non enim illum veritus est (sol), sed regium nomen: atqui vel ipsa veritas non benefaciat auctoritate, sed intercessor erit? caeterum ad propositum pergamus.

Nomen Patris Ens est, et nomen Filii Ens. Nomen Patris Adjutor est, et nomen Filii Adjutor. Nomen Patris Omnipotens est, et nomen Filii Omnipotens. Si sententiam ferendo haec dico, noli admittere; sin autem probando, noli negligere. Vide, quid patiaris, si quae ego dico, neglexeris: prophetas offendis, Deum negas. Si prophetas offendes, adhuc progrediens in impietatem decides. Si mea haec verba reputabis, qui prophetae locuti sunt, non me commentatorem offendes, sed prophetarum voces, et Dei inspirationem. An nescis, quod sibi adscribit Deus contumeliam Prophetis illatam? Quum contemptus fuit Samuel a populo, quid dixit Deus? *Non te despexerunt*, inquit, *sed me*. Ut autem manifestum faceret, quod qui Doctorem et Prophetam non audit, Deum non audit, dicit ad Ezechiel: *Fili hominis, vade ad domum exacerbatorum, et loquere ad illos, et non audiant te, quoniam nolunt me audire*. Si te audiunt, me quoque audiunt; sin autem me, te quoque.

Իսկ զի ամենակալ կոչի որդի, ցուցաւ իսկ. բայց և միւս ևս մարգարէ վկայէ, Որ շինէ յերկինս զելս իւր, և զաւետիս իւր յերկրի հաստատէ, տէր ամենակալ անուն է նորա։ Իսկ ո՞վ իցէ որ շինեաց յերկինս զելսն, և հաստատեաց յերկրի զաւետիսն, եթէ ոչ՝ որ ասաց ցաշակերտսն 'ի վերանալն, եթէ ընդ ձեզ եմ մինչև 'ի վախճան աշխարհի։ Ընդ ահաւասիկ եկից ասէ տէր ամենակալ, և բնակեցայց 'ի միջի ձերում։ Զի՞նչ իցէ բնակեցայցն։ Աւետարանիչն մեկնէ, թէ բանն մարմին եղև, և բնակեաց 'ի մեզ։ և ապաւինեսցին ազգք բազում 'ի տէր, և ծանիջիք՝ զի տէր ամենակալ առաքեաց զիս։ Ո՞ւր ասեն գրեալ է, թէ որդի ամենակալ է։ Ո՞ւր գրեալ իցէ, եթէ հայր ամենակալ է։ Բանս պահանջես, բանս պահանջեմ. զօրութի͞ ժողովես, զօրու͞ն զամարեմ. խօսեայց 'ի մարգարէից, ընկալ 'ի մարգարէից. քննեցէք զգիրս ասէ փրկիչն. չիք ինչ որ զյայտնի ինչ քննէ, այլ զծածուկն. քննեցէք ասէ զգիրս։

Տես, զի՞արդ կերպարանօք միոյ իշխանութե͞ն երրորդութիւն քարոզի։ Լուր ա͞յ, որ ասէ, այսպէս ասէ տէր 'ի վերայ մարգարէիցն՝ որ մոլորեցուցանեն զժողովուրդն։ Ո՛չ դիր հաստատութե͞. որ խածատեն ատամամբք իւրեանց զքարոզսն, բերանօք իւրեանց խօսին զխաղաղութի͞, և ոչ տուաւ խաղաղութիւն՝ 'ի բերանս նոցա. զի ոչ ոք իցէ որ ասիցէ (լսիցէ) 'ի սուտ մարգարէիցն. բայց ես ասէ լցայց. լցայց զօրութե͞ հոգւով տ͞ն։ Զայս կամ ընկալ և հաւատա, կամ ջնջեա 'ի մտաց. քանզի զգիրս կենդանիս ոչ կարես ջնջել։ Զի ոչ ոք իցէ ասէ, որ լսիցէ սուտ մարգարէից. բայց ես լցայց զօրութե͞ հոգւով տ͞ն. չկարէ ասել, թէ իմով հոգւովս, այլ թէ ես լցայց զօրութե͞ հոգւով տ͞ն։ Ո՞ բարբառի զայս, մեկնեա ինձ զբանս, զի իմացայց զմիտս զօրութե͞ն։ Իսկ 'ի միւսում վայրի ասէ ա͞ծ, թէ ոչ ես յաւելից ողորմել տանն իսրայէլի, այլ յանդիմանս կացից նոցա հակառակութե͞. բայց որդւոցն յուդայ ողորմեցայց, և փրկեցից զնոսա տերամբ ա͞յ իւ-

Omnipotentem autem vocari Filium, jam demonstratum. Porro et alter propheta testatur; dicens: *Qui struit in caelo ascensum suum, et promissionem suam in terra confirmat, Dominus omnipotens nomen est ejus*. Quis ergo sit, qui struxit in caelo ascensum, et firmavit in terra promissionem, nisi qui dixit ad discipulos, dum ascenderet, *Vobiscum sum usque ad consummationem mundi*? Ibi dicit, *Ecce veniens, ait Dominus omnipotens, habitabo inter vos*. Quid autem sit illud, *habitabo*, Evangelista exponit, *Verbum caro factum est, et habitavit in nobis*. Et *confugient gentes plures ad Dominum, et noscatis, quia Dominus omnipotens misit me*. Ubi, ajunt, scriptum est, quod Filius omnipotens sit? Ubi scriptum est, quod Pater omnipotens sit? Verba poscis, verba reposco: exercitum (vel virtutem) colligis, exercitum congrego. Si loqueris ex prophetis, accipe ex prophetis. *Scrutamini Scripturas*, ait Redemptor. Nemo est qui aperta scrutetur, sed occulta. *Scrutamini*, inquit, *scripturas*.

Vide quomodo in forma unius principatus Trinitas celebratur. Audi Deum dicentem: *Haec dicit Dominus in prophetas, qui seducunt populum*. Adverte constanter. *Qui mordent dentibus suis praecones, ore suo loquuntur pacem, et non est data pax in ore eorum*. nemo enim erit, qui (verum) audiat, ex falsis prophetis. *Ego tamen*, ait, *implear*; implear (nimirum) *virtute Spiritûs Domini*. Haec aut suscipe et crede, aut dele de mente; quoniam libros extantes (vel viventes) non potes delere. Siquidem *nemo erit*, inquit, *qui audiat pseudoprophetas, ego tamen implear virtute Spiritus Domini*. Non potest dicere, meo spiritu, sed quod *ego implear virtute Spiritus Domini*. Quis haec profert? Expone mihi verba, ut intelligam intentionem virtutis. Et alibi dicit Deus: *Non amplius adjiciam misereri domûs Israel, sed resistam eis contradictione: filiorum tamen Judae miserebor, et salvabo eos per Dominum Deum eorum*. Ergone per te non salvabis, sed per alium Deum? Non advertunt haeretici,

րեանց։ Այլ քեւ ո՛չ փրկեսցես, այլ այլո՛վ ա՟վ։ Զառնուն 'ի միտ հերձուածողքն, թէ մարգարէիցն բանքն զեղծեալ են. զի թէ մերկ[1] քարոզէր, այն չէր մարգարէութիւն, այլ քարոզութիւն. չէր մարգարէութիւն, այլ՝ աւետարան. որ ինչ յայտնի է, աւետարան է. և որ ինչ խաւարուրեալ, մարգարէութիւն։ Այլ դու ասէ դանիէլ՝ կնքեա՛ զբանս տեսլեանս այսորիկ. փոխանակ ասելոյ, թէ անյայտութեամբ ծածկեա՛. ո՛չ եթէ զգիրս ծածկեա՛, որ մինչև ցայսօր ընթեռնուն, այլ զմիտս բանիցն։ Կնքեցան բանք մարգարէիցն, և մեկնին աւետարանաւ։

Դարձեալ ասէ ա՟ծ ցժողովուրդն, թէ զի՞նչ արարից ընդ ձեզ, զխրատ ո՛չ ընկալարուք. կատարեցի զմարգարէս ձեր սրով բերանոյ իմոյ, սակայն և այնպէս ո՛չ լուարուք ինձ. կործանեցի զձեզ՝ որպէս կործանեաց ա՟ծ զսոդոմ և զգոմոր։ Այլ ընդէ՞ր չասիցես, թէ որպէս կործանեցի զսոդոմ և զգոմոր, այլ թէ որպէս կործանեաց ա՟ծ։ Դու արդեօք այլո՞ւմ նմանեցեր. կործանեցի զձեզ ասէ, որպէս կործանեաց ա՟ծ զսոդոմ և զգոմոր. սակայն և այնպէս ո՛չ հաւատացէք ինձ։ Տեսանե՞ս ծածկեալ զզօրութիւնս, մանաւանդ թէ յայտ յանդիման իսկ լուսաւորեաց. տեսանե՞ս զզօրութիւն ա՟ծպաշտութեան համարձակեալ։

Այլ արդ ընդէ՞ր մեղադիր առողին լինիցիս, որ ամենակալ զհայր և զորդի և զհոգին ասիցէ. զոր օրինակ յորժամ ասիցեմ, ա՟ծ և ա՟ծ և ա՟ծ, ո՛չ զերիս ա՟ծս ասեմ, այլ մի, նոյնպէս յորժամ ասիցեմ, ամենակալ և ամենակալ և ամենակալ, ո՛չ երիս ամենակալս ասեմ, այլ մի։ Պատկառեցուցէ՝ զքեզ բարբառ փրկչին, որ ասէր ցհրէայսն, յօրէնս ձեր գրեալ է, թէ յերկուց մարդոց վկայութիւն հաւատարիմ է. յորժամ մարդ է, մա՛րդ[2] ասէ, հաւատայք. և յորժամ ա՟ծ, և ա՟ծ ասէ, չհաւատա՞յք։ Բայց սակայն թէև ասէ, ես և հայր, ո՛չ երկուս ա՟ծս ուրոյն 'ի միմեանց ասէ, այլ մի ա՟ծութիւն իւր և հօր. և յայտ միաւորութիւն առնէ, թէ ես և հայր իմ մի

1 Կամ մեկն, մեկին. ուր գրեալ իբր յեղցեալ, խուկեալ, և կէ՛ էր, մեկ։ Իսկ մերկնալ, կամ է իբր զեղչեալ, համառօտ։ զնոյն

quod prophetarum verba obscuritatibus suffusa sunt. Si nempe explicite praedicaretur, id non esset prophetia, sed praedicatio; non foret prophetia, sed Evangelium. Quicquid enim patet, Evangelium est; et quicquid obscuritate implexum, prophetia. *Tu autem Daniel*, ait, *obsigna verba hujus visionis*; id est, obscuritate obtege; non vero, librum occulta, qui usque hodiernam diem legitur, sed sensum verborum. Obsignata sunt verba prophetarum, et explicantur per Evangelium.

Praeterea dicit Deus ad populum: *Quid faciam vobis? monitum non accepistis. Cecidi prophetas vestros gladio oris mei, sed tamen neque sic audistis me; destruxi vos, sicut destruxit Deus Sodom et Gomor.* Quare autem non dicis, sicut destruxi Sodom et Gomor, sed *sicut destruxit Deus?* Tune alium imitatus es? *destruxi vos*, ait, *sicut destruxit Deus Sodom et Gomor, nec tamen ita credidistis mihi*. Vides occultam virtutem? imo evidenter elucidavit. Viden' virtutem pietatis confidentem?

Quare igitur incusas dicentem, qui omnipotentem Patrem et Filium Spiritumque Sanctum asserit? Quemadmodum cum dixerim *Deus*, et *Deus*, et *Deus*, non tres deos dico, sed unum; similiter quum dicam *Omnipotens*, et *Omnipotens*, et *Omnipotens*, non tres dico omnipotentes, sed unum. Erubescere te faciat vox Redemptoris dicentis ad Judaeos: *In lege vestra scriptum est, quod duorum hominum testimonium fide dignum est*. Dum homo, et homo dicit, creditis; dum vero Deus, et Deus dicit, non creditis? Et re quidem vera quum dixit, *Ego et Pater*, non duos Deos separatos ab invicem dicit, sed unam Divinitatem suam et Patris. Id autem manifestum facit per *Unum*,

*մթութիւն ունի զինի և ասելն, խաբուբէալ ։*
2 *Թուի գրեալ, մարդ և մարդ ։*

եմք։ և քանզի մի վասն անքակութեն ասէ. և զեմքն, զի մի ոք անանձնաւոր [1] զերեսն համարեսցի։

Խնայեսցուք և զգուշասցուք 'ի հոգիս մեր. Թողուք 'ի բաց զթոյնսն. ընդէ՞ր զժանգն. 'ի բաց քերեա զպղինձն. հնազանդ լեր ինձ, որում և դևք հնազանդ եղեն։ Պատկառեցուսցեն զքեզ փոփոխմունք իրացն. մի յեկեղեցւոյն հաստատեսցեալ, և արտաքս ելեալ՝ հերետիկոս լինիցիս. մի ասա ակնածող 'ի բանէն, և արտաքս ելեալ՝ յանաստուածութիւն զառածանիցիս։ Ոգի թեթև 'ի փոփոխմունս՝ չկայ յակաստանի, չառնի հաստատուն. ոգի երկեղածին անցանէ ընդ փոփոխմունս, բայց ինքն ոչ փոփոխի. աստուածպաշտն՝ և 'ի պատերազմի աստուածպաշտ է, և 'ի սովի՝ նահատակեալ, և 'ի լիութեն՝ չյղփացեալ. աստուածպաշտն՝ ամենայնի ժուժկալ, և համբերող, չփոփոխի ըստ բնութեն փոփոխմանցն։ Ոգի արդարոյ ոչ 'ի խռովութենէ պատերազմաց շարժի, և ոչ 'ի յղփութենէ դիւրութենէ ծուլանայ. յորժամ ուղիղ փառաւորութի քարոզեսցի, փոյթ լսող գտանի. և առ կամակորսն՝ փոյթ կամակոր. ոչ բաժանի 'ի միաբանութէ, չունի միտս երկմիտ։

Ո՞ւր է տէր Աստ, եկա՛յք երթիցուք զհետ նորա. ապա եթէ զմոլորութե զհետ երթայցես, մոլորութե հասանես։ Զոր օրինակ գինի ազնիւ չվնասի 'ի փոփոխմանց, թէպէտև յամանոյ յաման փոխեսցես՝ նոյն համ է և նոյն սեռնութի. իսկ յոռին վաղվաղակի յանդիմանի 'ի փոփոխմանցն։ նոյնպէս և ոգի երկեղածին չպարտի 'ի փոփոխմանցն, այլ յաղթէ փոփոխմանն. իսկ ծանծաղագոյն վաղվաղակ յանդիմանի։ Նա չէ իմ բանս, այլ երանելւոյն երեմիայ մարգարէի, որ ընդ ազգին մովաբացւոց գուայր. քանզի առ ժամանակ մի 'ի դիւրութե էին, և կարծէին թէ ցանկ 'ի դիւրութե վայելեսցեն, և ոտնհար լինէին գերութեն երուսաղէմի, նախատէ զնոսա մարգարէն, թէ մի պարծիք 'ի դիւրութեդ, և մի 'ի յաջողութի իրացդ հպարտանայք. քանզի չև ես փո-

1 Գրեալ էր, անձնաւոր։

*Ego et Pater unum sumus*. *Unum* nempe propter indissolubilitatem dicit; *Sumus*, autem, nequis persona carentem faciem arbitraretur.

Parcamus indulgeamusque animis nostris. Exspue venenum, expunge rubiginem, expurga ahenum; obedito Deo, cui et daemonii obediere. Vereri te faciant mutationes rerum. Ne in Ecclesia fidelis, et egressus foras, haereticus sis; ne hic morem gerens rationi verbi, foris in brutum verteris. Anima levis ostenditur, cum sese mutat, nec constat in se. Firmus stat animus timorati, transit per mutationes, ipse tamen non mutatur. Pius, etiam in certamine pius est. Tam in fame concertans, quam in abundantia non pigrescens. Pius in omnibus continens patiensque, secundum naturam mutationum nunquam mutatur. Animus justi nec a confusionibus bellorum movetur, neque ex copia commoditatis hebescit. Quando orthodoxia praedicatur, studiosus auditor comperitur, et in obliquum inclinare abhorret. Non dividitur ab unione, non mentem ancipitem habet.

Unus est Dominus Deus; venite sequamur eum. Sin autem errorem sequeris, errorem consequeris. Sicut vinum bonum non laeditur a mutationibus; quamvis enim de vase in vas mutabis, idem est sapor, et idem nitor, ubi pravum statim ( pravitatis ) convincitur a mutationibus: similiter et animus timorati non debellatur a mutationibus, sed superat mutationem; ignavus autem cito citius arguitur. Neque meum est verbum, sed beati Jeremiae prophetae, qui gentem Moabitarum redarguit. Quoniam cum commodis, bonisque ad tempus affluerent, putabant se semper commodis frui ( posse ), et objurgabant captivitatem Hierosolymorum, conviciis eos prosequitur propheta, Nolite, inquiens, gloriari de commoditate, nec etiam efferamini propter prosperitatem;

փոխեցայք. փոխեցի՛ և ձեր փոփոխումն: չև ևս գործ 'ի ձեռն արար, զի ընտրեսցին կամքն: Այլ զի՞նչ ասէ, հանգեաւ մովաբ 'ի մանկութէ իւրմէ, և փոփոխումն չընկալաւ դժպհութ իւրոց. հանգեաւ մովաբ 'ի մանկութէ իւրմէ, և պանձացաւ 'ի փառս իւր, չթափեաց երբեք աման յամանոյ. փոխանակ ասելոյ, չչոգաւ երբեք 'ի գերութի, վասն այնորիկ ճաշակ նորա 'ի նմա, և հոտ նորա 'ի նմին: Պայծառ է եղբարք և զօրինակն 'ի մէջ բերել ածեղէն վարդապետութե կնքեալ գրոց սրբոց. զի՞նչ նման է ասել զածութին գինոյ. այլ զի մարգարէին վարդապետութին՝ անվրէպ փրկութի է. հանգեաւ ասէ մովաբ 'ի մանկութէ իւրմէ, և պանձացաւ 'ի փառս իւր, չթափեաց աման յամանոյ, չչոգաւ երբեք 'ի գերութի. վասն այնորիկ համ նորա 'ի նմա, և հոտ նորա 'ի նմին: Եկեղեցի փորձեցաւ չարութ, թափեցաւ յամանոյ աման. 'ի խաղաղութէ 'ի պատերազմ, և 'ի պատերազմէ 'ի խաղաղութիւն. և կաց մնաց 'ի նմա հոտ անուշից. հոտ անոյշ եմք ասէ 'ի քս:

Զայս ամենայն ճառեցի, և գիտեմ զի երկայնեցի զբանս. այլ պարտ էր ինձ որ զրպարտեցայս, զիրաւունս անձին ցուցանել. քանզի այսպիսի զրպարտութի յամենայն եկեղեցիս տարածեցաւ. թէ մի ոք յոռի խօսեցաւ, այլ ամենեքեան իսկ ընդ դրօա վաճ[1] են: Ընդ իմ, և ընդ ամենայն եկեղեցւոյ առաքի պատասխանի, թէ եկեղեցի՝ մի տէր ունի, և մի ած, մի արարիչ, և մի ամենակալ, և մի թագաւոր: Բայց յորժամ զմին լսես, զանքակ երրորդութին ած զմտաւ, զանվախճան և զանեղծ թագաւորութին, զփառս և զճշմարտութի. և ոչ երբեք բաժանի, այլ կայ և մնայ մշտնջենաւոր և կենարար. յորում լիցի ամենեցուն մեզ վայելել ճշմարտութ, և փառս տալ հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1 կամ գարշութեամբ:

quoniam nondum mutationem subiistis; mutabitur et vestra mutatio; nondum operam dedit, ut electio fieret voluntatis. Quid ergo dicit? *Quievit Moab a juventute sua*, sive mutationem non vidit incommoditate rerum: *Quievit Moab ex juventute sua, et gloriatus est in gloria sua; non est umquam fusus de vase in vas*; ac si diceret, non abiit unquam in captivitatem: *propterea gustus suus in eo, et odor suus in ipso*. Oportet, Fratres, animadvertere, quonam modo Divinam doctrinam sacrae litterae sigillo munitae exponant (1). Quae enim convenientia est similem vino dicere Divinitatem? Sed quia doctrina prophetae indubia salus est, *Quievit*, inquit, *Moab ex juventute sua, et jactavit de gloria sua: non est fusus de vase in vas*, non abiit umquam in captivitatem; *propterea sapor suus in se, et odor suus in ipso*. Ecclesia tentata fuit a malitia; fusa fuit de vase in vas, de pace (nimirum) in bellum, et de bello in pacem; atque permansit in ea odor suavitatis. *Odor suavis sumus*, inquit, *in Christo*.

Haec omnia sermocinatus sum, et scio me sermonem prolongasse. Sed oportebat me criminatum jus meum defendere: hujusmodi namque calumnia in omnes Ecclesias propagata est. Si unus quisquam minus bene locutus est, tamen omnes objurgationem subeunt. Pro me itaque, et pro universa Ecclesia apologiam statui, quod Ecclesia unum habet Dominum, et unum Deum, unum Creatorem, et unum Regem. Unum tamen cum audis, indissolutam Trinitatem considera, infinitum incorruptumque regnum, gloriam, et veritatem: quae nunquam dividitur, sed permanet sempiterna et vivifica: in qua sit omnibus nobis frui per veritatem, et gloriam referre Patri et Filio et Spiritui Sancto, nunc et semper, et in saecula saeculorum, amen.

(1) Ad verb. exemplum adducere divinae doctrinae obsignatorum librorum sacrorum.

## ՃԱՌ. Ե.

Երանելոյն Սեբերիանոսի խօսք վասն Օ̅ աւրէի Կաքարոսաց, որ նոչէն անարատ, և վասն խոհանէրաց։

Երբեմն՝ յորժամ (ըստ) նախամեծարքն արարին շնորհքն ա̅յ՝ զանձապաշտ նուագման հնչէին, ընդ ձեզ էաք և մեք ամենեքին, 'ի բանին ճշմարտութե̅ միաբանեալք, զնոյնս ուսանէաք, ընդ նոյնս ուրախ լինէաք, և 'ի նոսին վայելէաք։ Չիք ոք յայնցանէ՝ որ զլաւն իմանայցեն, եթէ յանձին ինչ ուրախութի̅ առնուցու, այլ զամենայն 'ի փառս ա̅յ։ Որ միաբանէ ընդ ասողին, ընդ տուողին հաղորդէ. զի գովելով զասողն, այնմ երկիրպագանէ՝ որ քարոզին։ Եւ զայս մեզ հայր՝ նք 'ի նախանձէ բարք ուսուցին, մանաւանդ հօրս՝ որ գլուխ է ամենայն հարց, և 'ի պատուական աթոռն 'ի վերոյ քան զամենեսեան նստի, և յստակ և նք միտս ունի 'ի խանտաւարութ̅է։ Որ ինքն իսկ նախ զհոգևոր արուեստական բարբառն յօրինէ, և յականջս ամենեցուն նուագեալ հնչէ, թէ ո՞վ առնոյր տայր զամենայն ժողովուրդս ա̅յ մարգարէս. այնպիսի ոգի՝ որ զիւր տէրն փառաւորիցէ. որ զայլոց բանս և զլաւութիս՝ իւր համարեսցի։ Եթէ ոք զայլոց բանս աղարտիցէ, ոչ սմա՝ որ առ զշնորհսն, այլ նմա՝ որ ետն, ընդդէմ դառնայ։ Եւ յերեսացն երևին միտքն. և դու տես զհայրս հասարակաց, զիա̂րդ զուարթ երեսօք և քաղցրահայեաց աչօք նայի 'ի մեզ՝ որ ասեմքս, և ձեզ որ լսէքդ։ Յորժամ զերեսս ուրուք 'ի խոնարհ արկեալ տեսանիցես, 'ի միտ առ զմտացն նենգութիւն. յորժամ դէմքն 'ի խոնարհ կախեսցին, գիտասջի՛ր եթէ սիրտն զնենգութի̅ նիւթէ. որպէս և գիրք ասեն, եթէ որ ակնարկէ ակամբ, նիւթէ զնենգութիւն։

Որ փառաւորի, աշխարհ լուսաւորի. և որոյ

## HOMILIA V.

*Beati Severiani sermo de Pascha, deque Catharis, qui mundi* [1] *vocitantur, atque Magaeris, sive coquis.*

Olim, quando illi, quos praestantiores effecit gratia Dei, pietatis hymnos cantabant, vobiscum eramus et nos omnes, in verbo veritatis concordantes, eadem discebamus, de iisdem exultabamus, et iis fruebamur. Nemo est qui optime sapit, qui in semetipso laetetur, sed omnino in gloriam Dei. Qui concordat cum dicente (verba Dei), cum dante participat, nam laudando dicentem, adorat illum, qui praedicatur. Hoc autem nos, Pater, purus ab invidia mos docuit, maxime Patris nostri, qui caput est patrum omnium, et in venerabili sede supra omnes sedet, atque nitidam puramque a livore mentem habet. Qui ipse quidem primum spiritualem symphoniam comparat, et in aures universorum personans canit, *Quis*, inquiens, *sumens daret omnes istos populos Dei prophetas*? Talis profecto animus suum Dominum glorificat, qui aliorum dicta factaque probatissima tamquam sua recensuit. Qui vero alterius verba vituperabit, non huic qui gratiam acceperit, sed ipsi qui dederit, opponitur. Ex facie autem mens se prodit. Tu vero vide Patrem communem, quomodo hilari vultu et suaviter intuentibus oculis nos dicentes, vosque audientes aspicit. Quum vultum cujusquam demissum videas, conjice mentis dolum; quando facies humi defigitur, scito quod cor ejus insidias molitur: sicut et Scriptura dicit, *Qui nutat (innuit) oculo, dolum nectit*.

Christus glorificatur, mundus illuminatur; cujus

(1) Vel *puri*.

չարիք 'ի մտի կան, սրտառուչ, լերդակեղ 'ի խորխոցեալ նստի. և քանզի մեք հօր սիրոյ և յստակի 'ի նախանձուէ դիպեցաք, առանց նենգութեան ուսաք, և առանց նախանձու տացուք: Այլ արասցուք սկիզբն կարգին, զոր երէկն վարեաք, և թողաք վասն յաճախութեան ազգի ազգի մտացն, որ աստի անտի յորդին. և յօժարութեան 'ի մտի այն կայր, եթէ փոքր մի զսկիզբն աւետարանին մեկնեսցուք. և չգիտեմք զիա՛րդ մերժեաց զմեզ անտի կռիւն' որ ընդ հերետիկոսն անկաւ 'ի մէջ. ոչ յայլոց յայլ ճառս բանին եղանելով, այլ նմին, և նոյն մտաց ուշ առնելով. և Քրիստոսի փառաւորի, և պատերազմն ընդ Քրիստոսամարտն յարդարի: Խոստեցայ ամենայն ախտն. ամաչեսցեն' որ այսօր զգայթակղանաց և զցնորական տօնն առնիցեն. անուան լոկ, յարդեանց ճշմարտութեան թափուր:

Ընդ հրեայսն զատիկ առնեն, որոց զՔրիստոս զգեցեալ է. ընդ Քրիստոսամարտն հաղորդին քրիստոսազգեցեալք: Ո՞րչափ զգեցաս կոչեմ զնոսա վասն անուանն' զոր խոստանան. այլ զի՞նչ հաղորդութիւն լուսոյ ընդ խաւարի կայցէ. կամ զի՞նչ միաբանութիւն հրէից ընդ Քրիստոսի. կամ զի՞նչ հաւասարութիւն սեղանոյ Քրիստոսի, և խոհերական սեղանոյ հրէից. և որդիք աստուածպաշտութեան ընդ շունս զատիկ առնեն. որոց պարտ էր ընդ հրեշտակս երգել զօրհնութիւնս, ընդ շունս ոռնան. Աստուածպաշտոն ընդ հրեշտակս օրհնէ, խոստովան եղէց քեզ տէր բոլորով սրտիւ իմով, առաջի հրեշտակաց քոց սաղմոս ասացից քեզ. Աստուածպաշտն ընդ հրեշտակս փառաւորէ. և որ զկարգս եկեղեցւոյ եղծանէ, ընդ շունս առնէ զտօնն: Այլ զի չէ թշնամանաց բանս, այլ ճշմարտութեան և յանդիմանելոյ, լո՛ւր պօղոսի' մեծի քարոզին, որ ասէ, զգո՛յշ լերուք 'ի շանց, զգո՛յշ լերուք 'ի չար մշակացն:

Որոց զերկնաւոր լապտերս առեալ' ընդ հրեա՛յս ճրագալոյց առնեն. որք զգառնն Աստուծոյ ընկալան, և առնեն զատիկ, ընդ հրեայս ոչխա՛րս զենուն: Ո՞հ անմտութեանն: Ստուերն զճշմարտութիւն կամի եղծանել. և որք զճշմարտութիւն ընկալան' զհետ ստուերաց ընթանան: Ընդէ՞ր լուցանիցես ճրագ ընդ

autem animum mala obtinent, anxius, tamquam jecore vulnerato, maestitia plenus sedet. Nos tamen quia patrem attigimus purum purgatumque ab invidia, sine dolo didicimus, et sine invidia dabimus. Atque initium faciamus ex ordine, quem heri aggressi sumus, sed propter varias sententias hinc inde profluentes suspendimus. Nobis in animo erat, ut aliquibus verbis principium Evangelii explicassemus: et nescio quomodo lis cum haereticis interjecta, devios nos fecit, non aliunde ad alium sermonem transcendentes, sed eidem ipsi intentioni attendentes. Atque sic Christus glorificatur, et pugna adversus Christi hostes paratur. Rejiciatur omnis morbus; pudore afficiantur, qui hodie scandalo plenum ac phantasiâ festum faciunt, nomen merum, veritatis opere vacuum.

Cum Judaeisne pascham celebrant, qui Christo induti fuere? Num cum Christi oppugnatoribus communicant Christum vestientes? Christophoros eos voco propter nomen, quod profitentur: sed quae communio lucis cum tenebris sit, aut quae concordia Judaeorum cum Christo, aut quae paritas mensae Christi cum foeda mensa Judaeorum? atqui filii pietatis una cum canibus pascham celebrent? illi, quibus oporteret cum Angelis hymnos cantare, cum canibus blaterant. Pius Dei cultor cum Angelis benedicit. *Confitebor tibi Domine toto corde meo, coram Angelis tuis psalmum dicam tibi*. Pius cum Angelis glorificat; qui vero ordines Ecclesiae corrumpit, cum canibus festum celebrat. Quod autem non contumeliae est hoc dictum, sed veritatis convincentis, audi Paulum, magnum praeconem dicentem: *Cavete canes, cavete malos operarios*.

Qui caelestes lampades acceperint, cum Judaeis diem Luminum agant? qui Agnum Dei susceperunt, et Pascham agunt, cum Judaeis oves immolant? O insipientiam! Umbra veritatem vult destruere; et qui veritatem admisere, umbras sequuntur. Cur accendis lumen cum Judaeis, nisi ut nomen tuum ab E-

հրեայս. ո՞չ ապաքէն զի շրջանիցի անուն քո յաւե֊
տարանէն: Որ ապստամբին ասպանջական լինիցի,
և ապստամբին թէկն ածիցէ, ընդ նմին զնոյն պա֊
տիժ կրեսցէ: Լուր դաւթի. եթէ տեսանէիր ըզ֊
գողս, ընթանայիր ընդ նմա, և ընդ շունս դնէիր
զբաժին քո: Նորանի թէ ընդ շունս, և մի ընդ քնա
մարտան. շնութի և պոռնկութի թեպէտև աղտե֊
ղի և գարշելի անուանք և գործք են, և յաւիտենից
տանջանացն վրիժապարտք, այլ 'ի մարդկանէ առ
մարդիկ են մեղքն, և 'ի ծառայից առ ծառայակիցս.
բայց ընդ ա՟յ մեղանչել՝ անցանէ քան զամենայն մեղս.
որպէս և այն յանցանք սաստիկ են, զոր տ՟ն ոք յան֊
ցանիցէ՝ քան թէ ծառայակցին. նոյնպէս յորժամ
ընդ ա՟յ ոք մարտնչիցի, այն մեղք դաժան են քան
զամենայն մեղս: Ընդէ՞ր լինիս զօրող որդւոց ա՟ծպաշ֊
տութե ընդ որդիս կորստեան. եթէ տեսանէիր զոք
ընդ պատուհասիւ թագաւորի, և 'ի դիպահօջ յար֊
քունի երեսաց, միթէ կամէիր ընդ նմա բարեկամու֊
թի խառնել. ո՞չ ապաքէն թէև ունէիր իսկ բարե֊
կամութի, և զայն ես 'ի բաց քակէիր, զի 'ի պատ֊
ժոցն ապրեսցիս:

Տեսցուք, թէ յորժամ վայրի հրեայք կայցեն, և
յորժամ պայմանի քրիստոնեայք: Լուր ա՟յ աւե֊
տարանին. որ հաւատայ ասէ յորդի, ընդունի ըզ֊
կեանսն յաւիտենականս. և որ անհնազանդ լինի
որդւոյ, չտեսանէ զկեանս: Կենդանիք ընդ չկենդա֊
նիս տօ՞ն առնեն: Ո ինչ ինչ բարի խորհեցան
հրեայք, զո՞ր ա՟ծպաշտութե կարգ անեղծ պահե֊
ցին, զի 'ի նոցանէն կարևոր հաստատութիւն յեկե֊
ղեցոյ գեղեցիկ կարգս յաւելուցուս. չլսե՞ս մարգա֊
րէին՝ որ ասէ, թէ դուք տունդ իսրայէլի զամենայն
մանկութիս ձեր կամակորեցէք, և ատեցէք զճշմար֊
տութիւն. քանզի ուրացան զա՟ծպաշտութի, և վա֊
ճառեցին, քանզի չառին 'ի միտ: Նա՝ և զգիրսն
իսկ չպահեցին անարատ. ո՞չ առաջին իսկ ամբաստա֊
նութի այն է զնոցանէ յեսայեայ մարգարէէ. վա֊
ճառականք քո ասէ խառնեն ջուր ընդ գինի: Նորա֊
նի եթէ և այժմ հերձուածողքն ջուր ընդ գինի
խառնեին, և ո՞չ զա՟ծ ընդ արարածս: Տես զրուլ

vangelio extinguatur? Qui rebellem hospitio receperit, et rebellis partem tenuerit, una cum illo supplicium patiatur. Audi David dicentem: *Si videbas fures, concurrebas eis, et cum canibus* (adulteris) *ponebas portionem tuam*. Utinam cum adulteris, non vero cum adversariis Christi. Adulterium atque fornicatio quamquam obscoena abominandaque nomina et opera sunt, et aeternae poenae obnoxia, verum ab hominibus ad homines sunt peccata, atque a servis ad conservos, contra tamen Deum peccare superat omne peccatum. Sicut graviora valde sunt delicta adversus dominum commissa quam contra conservum, ita cum quis pugnat cum Deo, tale peccatum committit, quod acerbius omni peccato est. Quare aemularis tu filius pietatis filios perditionis? Si aliquem sub castigatione regis, inque custodia, regia facie longe alienata, inclusum videres, vellesne amicitiam cum illo inire? nonne etiam si habuisses amicitiam, illam quoque dissolveres, ut te poenis eximeres?

Videamus, quo in statu stent Judaei, et in qua conditione Christiani? Audi sanctum Evangelium: *Qui credit*, ait, *in Filium, recipit vitam aeternam; qui vero inobediens erit Filio, non videbit vitam*. Viventes una cum non viventibus festum agant? Quid boni cogitarunt Judaei? quemnam pietatis ordinem inviolatum servarunt, ut ab illis necessariam confirmationem in Ecclesiae pulchros ordines adjicias? Nonne audis prophetam dicentem, *Vos domus Israel totam juventutem vestram detorsistis, et mentiti estis veritati?* Quoniam abnegarunt pietatem vendideruntque, quia non intellexerunt. Imo neque vinum servarunt illibatum: nonne vel prima accusatio de illis ea est, quam infert Isaias propheta? *Mercatores tui*, ait, *miscent aquam cum vino*. Utinam nunc quoque haeretici aquam cum vino commiscerent, non vero Deum cum creaturis. Vide cum literis ipsis (factam) accusationem Prophetarum de Judaeis, quam et Aposto-

իսկ ամբաստանութիւն մարգարէիցն զՀրէիցն, զոր և առաքեալքն յայտ յանդիմանն քարոզեն։ Լուր մեծի քարոզչին պօղոսի, որ գրէ առ Թեսաղոնիկեցիսն. ոչ կամիմ ասէ, եթէ անտեղեակ իցէք եղբարք, զի և դուք զնոյն չարչարանս կրեցէք 'ի ձերոց ազգականաց, որպէս և եկեղեցին այ 'ի Հրէից անտի. 'ի Հրէիցն՝ որք զտէր յն սպանին, և զիւրեանց մարգարէսն, և զմեզ հալածեցին, որ և այ յաչաց ելին, և մարդկան հակառակ կացին։ Որք ընդ անչափ պատուհասիւք են, նոցա հաղորդակից լինիս։ Եւ այնպիսին ասէ եսայի, թէ այն է բաժին քո, և նոյն վիճակ ժառանգութե քո։

Կամէի ուսանել 'ի նոցանէն, թէ ընդէ՞ր իսկ բնաւ զտօնն առնիցեն, վասն որո՞յ յուսոյ. որք զապաշխարութիւն 'ի միջոյ բառնան, զմե՞ պաշտիցեն զզուր և զընդունայն և զանհանճարից պաշտօնն. անյոյս յապաշխարութէ առնեն, որ քան զամենեսին կարօտ են ապաշխարութե. կեղով վառեալք՝ և զբժիշկն ուրանան։ Նոքա կաթարոսաց առեալ շրջեցուցանեն, որ է սբց. և ոչ մարմնով և ոչ մտօք ունին սրբութի։ Զիք ինչ որ այնպէս զայրացուցանէ զած, և 'ի ցասումն ածէ, և պատժապարտ մեծաց տանջանաց առնէ, որպէս յորժամ անձին ոք սբ անուն յորջորջիցէ. թէպէտև յամենայն մեղաց սբ իցէ, պարտի զանձն 'ի մեղաւորաց կողմանէ հաշուել։ Լուր սբյն յովհաննու, որդեակք եթէ մեղանչեմք, չեմք յայ. և դարձեալ, թէ որ զչարիս գործէ՝ չէ յայ։ Յորժամ ետ խրատ չմեղանչել, ապա զճշմարիտն 'ի մէջ բերէ. որ ասացն, թէ որ մեղանչէ՝ չէ յայ, խոնարհագոյն ևս իջեալ՝ ասէ նոյն. եթէ ասեմք, եթէ ոչ մեղաք, ստեմք։ Տե՛ս զգուշութե խրատ ետ, և՛ զբնութիւն ոչ ուրացաւ. հայեցաւ 'ի վարդապետութի ճշմարտութեն, ետես և զմտացն դիւրամէտ ստնաւորութիւն։ Իսկ այժմ թշնամիք՝ ածպատուութե տօնս առնեն, և հաւատոյս գործոց պահանջեն. և յամենայն հաստատութէ վրիպեալ են։

Կամէի և ես առ ձեզ՝ որ քաստէրըդ էք, յուզել այնպիսի ինչ բանս, և ցուցանել թէ 'ի զո՞ւր է այն հակառակութի, ընդունայն կարծիք։ Յորժամ յե-

li evidenter denuntiant. Audi magnum praeconem Paulum scribentem ad Thessalonicenses: *Nolo*, inquit, *vos ignorare, Fratres, quia et vos easdem calamitates passi fuistis a vestris cognatis, sicut et Ecclesia Dei ab ipsis Judaeis; a Judaeis, qui Dominum Jesum interfecerunt, et proprios prophetas, atque nos persecuti sunt: quique ab oculis Dei ceciderunt, et hominibus adversati sunt*. Qui sub tot et tantis castigationibus sunt, illorumne particeps fies? Ad tales homines dicit Isaias: *Ea est portio tua, et eadem sors haereditatis tuae*.

Vellem discere ab illis, quare unquam festum celebrent, ob quam spem? Qui poenitentiam e medio tollunt, cur inanem futilemque insipientium cultum exhibent? Spe poenitentiae destituti sunt, qui prae omnibus opus habent poenitentiae. Ulceribus scatent, et medicum negant (rejiciunt). Nomen Catharorum prae se sumentes circumducunt, puta Sanctorum sive purorum, ubi nec corpore, neque animo praeferunt sanctitatem. Nihil est, quod adeo exacerbet, in iramque moveat Deum, et reum magni supplicii reddat, quantum si quis sibi nomen Sanctum attribuat: quamvis enim ab omni peccato purus sit, debet seipsum in parte peccatorum connumerare. Audi Sanctum Joannem: *Filii, si peccamus, non sumus ex Deo*. Et rursum: *Qui mala facit, non est ex Deo*. Postquam admonuisset ne peccatum committeretur, deinde verum in medium ducit. Qui dixit, quod *Qui peccat, non est ex Deo*, inferius descendens dicit idem: *Si dixerimus quoniam non peccavimus, mentimur*. Tam ergo cautelae monitum dedit, quàm naturam non negavit. Respexit in doctrinam veritatis: vidit et mentis offensionem facile pronam. Nunc autem inimici, pietatis festum agunt, et probationem operum exigunt, omni tamen constantia destituti sunt.

Vellem et ego apud vos Christi amantissimos agitare hujuscemodi verba, et ostendere quod gratis est controversia illa, et inanis sententia. Quando quis

կեղեցւոյ կարգաց որք 'ի բաց ելանեն, չկայ յակաստանի. այլ առեգնայց առնէ զնա մոլորութիւնն, որպէս յորժամ յորձանք գետոց՝ որ 'ի ծով մտանիցեն: Ոլի՞նչ յայտ զատիկն և տօնն առնիցեն, զի՞նչ յաւուր տօնին կատարեսցի. ո՞չ ապաքէն քնի չարչարանք և յարութի քարոզի. փրկութի աւետարանի աշխարհի, ամենայն հոգիք ած եղէն բանիւն լուսաւորին: Այլ արդ զի՞արդ. 'ի միում աւուր 'ի տարւոջն միա՞յն ունիմք զայն կնիք, և զառհաւատչեայ ածպաշտութն, և չիցէ՞ յամենայն կիւրակէի զատիկ եկեղեցւոյ. մի թէ նո՞ր ինչ պատարագ 'ի տօնին մատչիցի. միթէ այն ա՞յլ զենումն իցէ; և այս այլ. միթէ ա՞յլ վայելչութի խորհրդոց 'ի զատկի իցէ, և այլ 'ի կիւրակէի, և 'ի չորեքշաբաթու, և յուրբաթու: Քանիցս անգամ և առնիցես զյիշատակս չարչարանացն քնի, զատիկ առնես: Ո առաջինն՝ միանգամ լինէր զենումն գառանց 'ի տարւոջն. իսկ քնի պատարագ հանապազ մատչի: Վասն որոյ և կենարարին յայտ արարեալ, թէ խորհուրդն չծառայէ ժամանակաց և աւուրց, կամ ամսոց և տարեաց, ասէ ցաշակերտսն. քանիցս անգամ և ուտիցէք զհացս զայս, և ըմպիցէք զբաժակս զայս, զի՛մ մահ պատմեսջիք: Արդ՝ ո՞ առնիցէ զայն տօն: Որ զնոյն խորհուրդ կատարեսցէ, հանապազ զատիկ առնիցէ:

Այլ եթէ հանապազ ասեն՝ խորհուրդն կատարի, զի՞նչ պէտք նոր տօնին իցէ: Բազում ինչ. բազում անգամ տուաւ յայ 'ի մխիթարութիւն մարդկեղէն բնութեան և տկարութե այսպիսի ինչ. հանապազ այ խորհուրդն անշարժ և հաստատուն կայ, և սեղանն, և քահանայք, և պատարագք, և պաշտամունք, և ամենայն ինչ՝ որ յանուն նորա կատարի: Բայց քանզի ետես զմարդկան տկարութիւնս ած, և ընդ երկրաւոր իրս խառնեալ, և պէսպէս պղծութեք խառնակեալ, կարգեաց այնմ հնարս սրբովք առաքելովքն՝ զտօնն զատկաց. զի որ զամենայն ժամանակս ընդ մեղս զգածեալ իցեն, և ընդ երկրաւոր կարիս բևեռեալ, և չկամիցի նայել ընդ լոյս ածպաշտութեն, գէթ անուամբ տօնին ակն ածիցէ,

ab Ecclesiae disciplinis abscedit, inconstans comperitur, atque raptus detruditur ab errore, sicut quando gurgites amnium mare ingrediuntur. Quid, quaeso, Pascha et festivitas ejus manifestant? quid celebratur in die ipso festivitatis? Nonne Christi cruciatus et resurrectio praedicantur, salus annunciatur mundo, omnes animae divino verbo illuminantur? Quomodo autem? Anne uno, et solo die per annum illud sigillum arrhabonemque pietatis habemus? nonne omni Dominica (die) Pascha Ecclesiae est? Num nova quaedam hostia in festo illo offertur? Num illa alia est mactatio, et ista alia? Num aliud decus mysteriorum in Paschate est, et aliud in Dominica, atque Feria quarta, et die Veneris? Quotiescumque agas memoriam Passionis Christi, Pascham peragis. Olim semel in anno fiebat agnorum mactatio; Christi vero Sacrificium perpetuo offertur. Quare et Salvator declarans mysterium (vel Sacramentum) hoc minime servire temporibus et diebus, aut mensibus annisque, dixit ad discipulos: *Quotiescumque manducabitis panem istum, et bibetis hunc calicem, meam mortem narrabitis*. Quis ergo celebrat illam Festivitatem? Qui illud mysterium perfecerit, semper Pascham celebrabit.

At, si jugiter, inquiunt, idem mysterium peragitur, quid opus erat novae festivitatis? Belle utique. Multoties datum fuit a Deo in consolationem humanae nostrae naturae ac imbecillitatis tale quidpiam. Continuo mysterium Dei immobile atque firmum stat, et altare, et sacerdotes, et hostiae, et officia, omniaque, quae in nomine ejus perficiuntur. Quoniam tamen vidit Deus hominum infirmitatem, eamque a terrenis rebus illectam, atque variis immunditiis immixtam, constituit per sanctos Apostolos Festivitatem Paschatis, quae tamquam medela reficeret. Ut qui per omne tempus peccatis inficitur, et terrenis vitiis imbuitur, ita ut nolit in lucem pietatis respicere, saltem nomen festivitatis vereatur, atque per

և յիշատակաւ կենարար չարչարանացն պատրաս-տեսցէ զանձն ճաշակել 'ի սրբութեանցն ։

Տօնք վասն բազմաց 'ի մի վայր ժողովելոց են. այլ մ̃զ հանապազ տօնք են ։ Զի՞նչ իցէ տօնք մ̃զ. զա̃ծ օրհնել. ապա ուրեմն որ հանապազ օրհնեսցէ՝ ցանկ տօնս առնէ. և լո՛ւր դաւթի՝ որ ասէ, օրհնեցից զտէր յամենայն ժամ, հանապազ օրհնութիւն նորա 'ի բերան իմում ։ Որ ցանկ օրհնէ՝ միշտ տօն առնէ ։ Զատկացն, և կացուրդիցն [1], և ամենաժո-ղով տօնից անուն զբազմաց 'ի մի վայր գումարելոյ յայտ առնէ, առ զխաւարեալս լուսաւորելոյ, առ զմոլորեալս դարձուցանելոյ, առ զկամակոր գնացս ուղղելոյ, առ 'ի զմեռեալս և զթաղեալս յարուցա-նելոյ, և ամենևին ամենայնի շինած անդամոցն ք̃ի լինելոյ ։ Այլ չեն ինչ զարմանք, որ յեկեղեցւոյն ճեղքեցանն՝ զի և 'ի տօնիցն մեկնեցին. զի թէ 'ի մէնջ էին, ապա ընդ մեզ էին ։ Այլ ապականիչ տօնն 'ի հաւատացելո՛ց յանդիմանեսցի. և մեր տօնն յիւ-րում ժամանակի պայծառասցի. ո՛չ որպէս թէ ժա-մանակաց շնորհքն ծառայեսցեն. զի ամենայն կարգք և յօրինուածք յեկեղեցւոջ տնկեսցի ։ Եկեսցուք այ-սուհետև 'ի կարգ ճառին. բարբառեսցո՛ւք և քարո-զեսցո՛ւք, ո՛չ իբրև անձանց ինչ զքարոզութիւն հա-մարել, այլ մ̃զ հօրս հարկանել զսպասաւորութիւն, և զդանդաղեալ զհայրենի բարբառոյն հատուսցուք զպարտս ։ Զայս ասեմ, զի մի՛ ոք անտեղեակ իրացս, և մեղադիր լինիցի, եթէ զհայրենի վարդապետութե̃ն ժամանակս յանձինս ինչ կորզիցեմք. զի մեք որպէս հրամանն առնումք, զայն առնեմք, և ըստ հայրենի կամաց զհետ երթամք 'ի հարկէ ։

Երէկ մեզ եղբարք առաջի կայր սակաւ ինչ զսկզբ-բան աւետարանին զա̃ծխօսութիւնն աւետարանել և ճառել, և ցուցանել՝ թէ զի՞նչ յայտ դիտաւո-րութիւն մտաց բանիցն առնիցէ ։ Յովհաննէս ասէ, թէ 'ի սկզբանէ էր բանն. և չասաց՝ թէ 'ի սկզբ-բանէ էր որդի, կամ միածինն ։ Ամրացոյց զմիտս լսողաց, թէ գուցէ առ չկարութեան մտաց մ̃ծա-

1 Կամ [illegible]. ուր գրեալ էր, [illegible] ։

memoriam salutarium Christi dolorum ad gustandum de Sanctis (sanctorum) se praeparet.

Festum propter plures in unum locum collectos statutum est, sed sanctis quotidie festum est. Quid sit festum sanctis? Deum benedicere. Qui ergo quotidie benedicit, perpetuo festa celebrat. Audi quidem David dicentem: *Benedicam Domino omni hora* (tempore), *quotidie benedictio ejus in ore meo*. Qui semper benedicit, perpetuo festum agit. Nomen autem Paschatis, et Solemnitatum, Panegyricorumque multitudinem in unum coetum congregatam declarat, ut tenebris obducti illuminentur, ut aberrantes in bonam viam revertantur, ut gressus audaces reprimantur [1], ut mortui sepultique resuscitentur, utque omnes omnino in aedificium membrorum Christi reducantur. Non est tamen mirum abscissos ab Ecclesia a festo quoque abscedere. Nam *si ex nobis essent, ergo nobiscum fuissent*. Sed festum depravans convincetur a fidelibus; nostrum autem festum suo tempore fulgebit; non quasi temporibus serviat gratia, sed ut omnis ordo et ornamentum in Ecclesia constituatur. Veniamus itaque in seriem sermonis, proferamus ac praedicemus, non velut nobis ipsis praedicationem adscribentes, sed sancto nostro patri obsequium praestantes, et cunctantis paternae vocis debitum persolvamus. Haec dico, nequis ignorans rerum culpam nobis imponat, ac si paternae doctrinae tempus in nosmetipsos diripiamus: nos enim sicut mandatum accipimus, id agimus, et paternam voluntatem necessario adimplemus.

Heri nobis, Fratres, propositum erat paululum exordii Evangelii theologiam annuntiare, atque referre pariterque demonstrare, quid sensus verborum patefaceret. Joannes dicit: *In principio erat Verbum*; nec dixit, in principio erat Filius, aut Unigenitus. Munivit nimirum mentes auditorum, ne forte cum ipsi

(1) Ad verb. *ad corrigendos gressus obliquos*.

խօսութեան մարդկեղէն կարծեօքն ածեղէն ծնունդն աղարտեսցի ։ Վասնզի առ մեզ յորժամ ծննդեան ճառք լինիցին, հօր և մօր կարծիք գան 'ի մէջ, և մարմնոյ թանձրութիւն, և կարեաց պատճառք, թաքուցանէ նախ զորդւոյն անունն, և ընծայեցուցանէ զբանին յորջորջումն, զի բանին յորջորջմամբ՝ զանկարեկան ծնողին և ծննդեանն մեկնեսցէ ։ Այլ զի դարձեալ վերստին կրկնեսցի, բան կոչէ, զի ցուցցէ՝ թէ չէ ըստ կարեօք ծնունդն ։

Այլ առ ած էր ասէ, զի զանբաժին պատուոյն յայտ առնիցէ ։ Ասաց, թէ առ ած էր, և ընծայեցոյց՝ զի ած է. ապա և զարարչութիւն 'ի մէջ բերէ, եթէ ամենայն ինչ նովաւ եղև. յանդիմանեսցէ զուր աշխատութիւն վիճողացն, որք 'ի ձեռն նորա և նովաւ ասելոյն՝ նուազութիւն պատուոյ միածնին կամին կազմել ։

Այլ թերևս ասիցէ ոք. գրեսցէր թէ հերձուածողքն պահանջեցին [1], և չկարիցեն ասել, թէ զինչ 'ի ձեռն նորայն իցէ, և զինչ նովաւն. դու՝ որ եկեղեցականդ ես, մեկնեա, զինչ 'ի ձեռն նորայն իցէ, և զինչ նովաւ ։ Ածեղէն գիրք չարկանեն 'ի կիր զբանս արուեստականաց, և չծառայեն մարդկեղէն մտաց կազմածոյ. քանզի չեն արիստոտելական խրատք, և ոչ պղատոնական խտիրք, այլ միամիտ հաւատք անխարդախ և անխորամանկ, և լի բազում ազատութեամբ ։ Յորժամ (ասէ) 'ի ձեռն նորա, և նովաւ, զայն ասէ, թէ 'ի նմանէ, ամենայն ինչ 'ի ձեռն նորա ։ զի՞նչ իցէ 'ի ձեռն նորա. այն իսկ է՝ թէ 'ի նմանէ ։ Ապա եթէ կամեսցին մեծ ինչ զառ 'ի նմանէն իմանալ, և հօր միայն տալ զառ 'ի նմանէն իբրև զառաւել պատիւ ինչ, յանդիմանի զուր աշխատութիւն ։ զի 'ի նմանէն՝ ոչ զարարիչն յայտ առնէ, այլ զնիւթ, և զատաղձ ինչ՝ յորմէ լինիցի. որպէս 'ի ջրոյ ձուկն, և յերկրէ անասունն ։ Յորժամ ասէ, բղխեսցեն ջուրք, և հանցէ երկիր, մինթէ զջուրն և

1 Գրեալ է, պահանջիցին, կամ պահանջեցան 'ի նախընթաց ճառի ։

theologicum sensum consequi non possent, humano consilio Divina nativitas depravaretur: quandoquidem apud nos quum de nativitate sermo occurrat, patris et matris conjectura, carnisque crassitudo, et affectionum rationes menti obversantur. Itaque abscondit primum Filii nomen, et perhibet Verbi nuncupationem, ut Verbi appellatione conditionem Genitoris Genitique humanis affectionibus nequaquam subjectam exponeret. Ut autem iterum repetam, Verbum vocat, ut demonstret non esse subjectam istiusmodi affectionibus generationem.

*Et apud Deum erat*, ait; ut indivisibilem dignitatem patefaceret. Dixit apud Deum esse, et exhibuit, quod *Deus est*; deinde etiam creationis auctoritatem in medium affert, dicens: *Omnia per ipsum facta sunt*. Castigetur inanis labor litigantium, qui his vocibus, *per ipsum*, et *ipso* diminutionem honoris Unigeniti vellent adstruere.

Sed fortasse dixerit quisquam: Si haeretici interrogati explicare impares sint, quid *per ipsum* sit, et quid *ipso*, tu qui Ecclesiasticus es, expone, quid sit *per ipsum*, et quid *ipso*. Divinae litterae minime usurpant verba artificiosa, neque humanae mentis excogitationibus inserviunt: quoniam non sunt Aristotelicae instructiones, neque distinctiones Platonicae, sed sincera fides abhorrens dolum calliditatemque, et magna libertate pollens. Cum dixerit *per ipsum*, et *in ipso*, vel *ipso*, id dixit, *ab ipso*, sive *ex eo*. *Omnia*, inquit, *per ipsum*. Quid sit, *per ipsum*? *ab ipso* videlicet. Quod si velint magnum quiddam intelligere illud, *ab ipso*, et Patri soli attribuere *τὸ ab ipso*, tamquam ampliorem quemdam honorem, confutatur inanis eorum labor. Siquidem *ab ipso*, vel *ex ipso*, non (semper) factorem indicat, sed materiam ac sylvam (elementi), ex qua fiat: ut, ab aqua piscis, ex terra autem jumentum. Quando dixit, producant aquae, et educat terra, num aquam et terram auctorem di-

զերկիր արարի՛չ կոչէ. և կամ յորժամ պօղոս ա-
սէ, թէ առաջին մարդն յերկրէ հողեղէն, մի թէ
արարի՛չ իցէ երկիր. և յորժամ ասէ, ոչ եղև այր
'ի կնոջէ, այլ կին յառնէ, մի թէ արարիչ կնոջ այրն
իցէ: Տեսանես, զի 'ի նմանէն՝ ոչ ամենայն ուրեք
արարչին է դիպող, այլ և նիւթոյ ինչ՝ որ 'ի մէ-
ջի կայցէ: Նա յայտ է թէ նովաւ և 'ի ձեռն նորա
ասել զկենարարէն, ոչ իբրև զնիւթ ինչ 'ի գործ
ածեալ ցուցանէ, այլ զչգոյն 'ի գոյ հաստատեաց, և
զչէն 'ի յէ կոչեցեալ: Ո՛չ (որպէս) նիւթն և ա-
տաղձ արուեստաւորացն իցէ, նոյնպէս և այ կամքն,
և ոչ եթէ էութն այ. քանզի ոչ եթէ յէութենէն
այ ելանեն գործքն, այլ կամքն կացուցանեն զչէն
յէ, և զչգոյն 'ի գոյ. կամի, և ամենայն ինչ լինի.
ակնարկէ՝ և ամենայն ինչ ունկնդիր լինի:

Նա արդ՝ յորժամ 'ի նմանէն ասիցէ, փոխանակ
ասելոյն, թէ 'ի կամացն հօր. և յորժամ 'ի ձեռն
նորա և նովաւ, այն իսկ է՝ թէ 'ի զօրուէն որդւոյ:
Նա զի զայս պատճառս 'ի բաց մերժեսցէ յայնցանէ՝
որ պատճառս մեղաց պատճառին, ասէ երանելին
պօղոս. Ո՞ գիտաց զմիտս տն, կամ ո՞ եղև նմա խոր-
հրդակից. կամ ո՞ ետ նմա փոխ, և առնուցու զփո-
խանորդն, զի ամենայն ինչ 'ի նմանէն և 'ի ձեռն
նորա: Նա թէ նուաղութն ինչ՝ 'ի ձեռն նորայն՝ ցու-
ցանիցէ, և առաւելութն պատուոյ՝ 'ի նմանէն, զիա՞րդ
իցէ, զի աստ զերկոսին զմիոջէ ասիցէ. մի թէ զան-
խառնս ինչ խառնիցէ: Ուստի՞ համարիցին ասա-
ցեալ զամենայն ինչ 'ի նմանէ և 'ի ձեռն նորա. զհօ-
րէ՞, թէ զորդւոյ: Նա թէ զհօրէ, ահաւասիկ և զհօրն՝
'ի նովաւն, և 'ի ձեռն նորա իջուցին, եթէ սպասա-
ւորութն է նովաւն. և 'ի ձեռն նորա գուշակեցին,
կարծի թշնամանք իցեն ասել զհօրէ զ'ի նմանէն, և
նովաւ, և 'ի ձեռն նորա. քանզի չմարթի միուսին՝
տէր լինել, և սպասաւոր: Իսկ զորդւո՞յ իցէ ասա-
ցեալ. ահաւասիկ չկայ միայն 'ի ձեռն նորայն և նո-
վաւ, այլ 'ի նմանէն. և չկարէ մին՝ սպասաւոր, և
ինքնագործ լինել: Բայց զի զմեր ցնորսն 'ի բաց պար-
զեսցէ, 'ի միոյ դէմս գումարեաց զերկոսին. զի ու-
սանիցիս, թէ բանք զայ բնութիւն չբաժանեն, այլ 'ի

xerit creationis? Vel quum Paulus dicat, *Primus homo a terra terrenus*, creatorne erit terra? Et quando dicit: *Non fuit vir a muliere, sed mulier ex viro*, anne creator mulieris sit vir? Viden' quod *τὸ ab ipso* non ubique auctori convenit, verum etiam materiae quae intersit. Liquet autem quod *per ipsum* vel *ipso* dicere de Salvatore, non sicut materiam aliquam usurpatam declarat, sed quod non subsistentem in subsistentiam condiderit, et non existentem in existentem evocaverit. Non sicut materia sylvaque artificum est, ita et Dei voluntas, neque substantia Dei: non enim ex substantia Dei exeunt opera, sed voluntas ejus, id quod non erat, in ens, et non extantem in extantem constituit. Vult, et omnia fiunt; annuit, et omnia obediunt.

Itaque quando *ab ipso* dixit, locum habet dicendi, ex voluntate Patris; quando vero, *ab ipso* et *in ipso*, id est, ex virtute Filii. Ut autem hujusmodi praetextus avertat a causantibus causas peccati, dicit beatus Paulus: *Quis novit mentem Domini? aut quis consiliarius ejus fuit? aut quis mutuum dedit ei, et accipiat retributionem? Quoniam ex ipso, et per ipsum, (et in ipso) omnia*. Si diminutionem aliquam ostendat *τὸ per ipsum*, et praestantiam honoris *τὸ ab ipso*, quomodo hic utrumque de uno asseruerit. An immixta quaedam commiscuerit? De quo putent dictum fuisse *omnia ex ipso, et per ipsum;* an de Patre, an de Filio? Si de Patre, ecce et Patris statum illis vocibus, *ipso* vel *per ipsum*, imminuerunt, si id famulatûs sit; atque eo ipso conjecerunt nimiam esse contumeliam de Patre illas voces, *ex ipso, et per ipsum, et in ipso* asserere: eoquod nequeat unus dominus esse et famulus. Sin autem de Filio dictum sit, ecce non solum adest *per ipsum, et in ipso*, sed quoque *ex ipso:* neque potest unus famulus simul et author esse. Sed ut nostra phantasmata depellat, in unius faciem collegit utrumque, ut discas, quod verba naturam Dei non dividunt, sed voces illae, *ex ipso, ipso, per ipsum, et in ipso*, de uno dicuntur; nunc de Patre,

